# ՇԱՀ-Ի-ԱՐՄԵՆՆԵՐ

Հ. Գ. ԹՈՒՐՇՅԱՆ

Փոքր Ասիա թերակղզում սելջուկների հիմնած առաջին, առավել զորեղ սուլթանությունը Իկոնիան էր։ Պապի կողմից մոնղոլների մոտ դեսպան ուղարկված հոլանդացի Վիլյեմ Ռուբրուկը (1220—1293) 1253 թ. անցնելով Իկոնիայի միջով, գրել է, որ Իկոնիայի բնակչության տասից ինը հայեր ու հույներ են և տասից միայն մեկը՝ թուրք։ Նա գրել է, որ երկրի առևտուրը, արհեստները, երկրագործությունը գտնվում են բացառապես հայերի ու հույների ձեռքին[1]։ Ահա թե ինչու Իկոնիան պատմության մեջ մտել է «Ռումի» (հունական) անունով։

Իկոնիայի սուլթանության քայքայումից հետո բարձրացած օսմանյան կայսրության մասին Միլլերն անգամ գրում է, որ «Թուրք ազգությունը կազմավորվում էր ուրիշ ազգություններից շատ ավելի դանդաղ և կայսրության մեջ փոքրամասնություն էր կազմում։ Չնայած թուրքական ֆեոդալների ասիմիլյատորական դաժան քաղաքականությանը, թուրք բնակչության քիչ թե շատ կոմպակտ խմբեր գոյացան միայն Անատոլիայում և Արևելյան Թրակիայի՝ Ստամբուլին հարող մասերում։ Մնացած շրջաններում թուրքերն այնպես էլ չկարողացան ասիմիլյացնել արմատական բնակչության հիմնական զանգվածը և իրենք էլ չասիմիլյացվեցին, մնալով, ըստ էության, ռազմական օկուպանտներ։ Թուրքական նվաճումը պատմական դժբախտություն դարձավ նվաճված ժողովուրդների համար՝ կասեցնելով նրանց սոցիալ-տնտեսական զարգացումը»[2]։

Թուրքերը արևմուտք եկան ինչպես սելջուկյան կազմակերպված պետության զորք-հորդաներով, այնպես էլ այդ զորական մեծ ուժի ճնշման տակ տեղահան արված ցեղախմբերով, որոնք շարժվում էին սելջուկյան զորքի թե առջևից և թե՛ հետևից։ Կազմակերպված բանակն ու նրա վրա հենվող պետությունը հազիվ մի քանի տասնամյակի կյանք ունեցան, սակայն մեկ անգամ արդեն տեղահան արված ցեղախմբերը շարունակում էին պլեկոծվել և պլեկոծել երկիրը Խորասանից մինչև Էգեյան ծով՝ միշտ ձգտելով գտնել ավելի հարմար արոտավայրեր, հարվածելով մեկը մյուսին և խժդժություններ գործելով տեղական երկրագործ խաղաղ բնակչության գլխին։ Թուրքական բազմաթիվ ու բազմազան ցեղախմբերի հետ շարժվում էին նաև իրանական ծագում ունեցող վաչկատուններ՝ դեյլեմները, թաթերը, թալիշները, նամանավանդ քրդերը, որոնք թուրքերից էլ առաջ ձգտում էին մտնել Տարոն-Տուրուբերան, սակայն Բյուզանդիան ամբողջ երկու դար նրանց շարունակ հարում է, շպրտել։ Սելջուկների առաջ բերած վայրիվերումների ժամանակ, երբ Բյուզան-

[1] Պրոֆ. Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. VI, էջ 30։

[2] «Большая Советская энциклопедия», հատ. 43, М., 1956, էջ 495։

դիան սպառված էր, Մրվանյան քրդերին հաջողվում է գրավել Խլաթը (Ախլաթ) և հաստատվել Վանա ծովի հյուսիս-արևմուտքում (1093—1100 թթ.)։

Մելիք-Շահին (1072—1092) և հատկապես նրա պարսիկ տաղանդավոր վեզիր Նիզամ-ալ-Մուլքին հաջողվեց թուրքական ցեղերի շարժման հետևանքով առաջացած ավերածություններից և վայրիվերումներից հետո որոշ չափով նորմալացնել կյանքը և վերականգնել քարավանային առևտուրը, որը կենդանություն էր տալիս քաղաքներին։ Մեր վերապահումը («որոշ չափով») ունի իր բացատրությունը։ Թուրքերենի մեջ «ֆեոդալիզմ» իրավակարգի հասկացողության դիմաց կա միայն մեկ բառ «դերեբեյլիք», որ բառացի թարգմանությամբ նշանակում է «ձորապետություն» կամ «հովտապետություն», որ սխալ կլիներ կապել սոսկ ոռոգման սիստեմների հովանավորության հետ։ Վաչկատուն անհանգիստ ուժերի առկայության դեպքում պետական իշխանությունը տարածվում էր միայն հովիտ-ձորերի և դաշտավայրերի վրա։ Իշխանության և իշխանավորների համար լեռները մնում էին անմատչելի և անհնազանդ։ Այնտեղ գործում էր իշխանության բացակայությունը՝ կողոպուտի, սպանության, անիշխանության ավանդական արտոնությունը։ Մելիք-Շահին ու նրա վեզիրին դժվար թե հաջողված լիներ իրենց փաստական իշխանությունը տարածել իրենց ընդարձակ սուլթանության նաև լեռնաստանների վրա և հնազանդեցնել վաչկատուններին (յուրյուկներին), որոնք Թուրքիայում և Պարսկաստանում մինչև XX դարը պահպանել էին այնպիսի յուրօրինակ անկախություն, որ կենտրոնական կառավարությունը հարկադրված էր ոչ միայն ճանաչել նրանց կիսանկախությունը, այլև գործարքի մեջ մտնել «յուրյուկ»—«աշիրաթների» պետերի հետ և ճանաչել նրանց գերիշխանությունը (Թուրքիայի հայկական վիլայեթներում, Պարսկաստանի հյուսիս-արևելքում և հարավում) նաև մոտակա հովիտ-դաշտավայրերի և փոքրիկ քաղաքների բնակչության վրա։ (Փակագծերի մեջ ասենք, որ օսմանյան կայսրությունը, աստիճանաբար ուժեղացնելով կենտրոնական իշխանությունը, առաջին հերթին վերացնում էր այն լեռնաստանների կիսանկախությունը, որտեղ ապրում էին ոչ-մահմեդականներ (օրինակ՝ Զեյթուն, Սասուն, Հեքյարի), և դեռևս կիսանկախ մնացած այդ քրիստոնյաների դեմ մղած պայքարում օգտագործում էր նաև մահմեդական «յուրյուկների» զորական ուժը։ Երբ ոչ միայն քրիստոնյաների կիսանկախությունը, այլև քրիստոնյաները վերացան Թուրքիայում, թուրքերն սկսեցին պայքարել նաև կիսանկախ մնացած մահմեդական լեռնականների դեմ (1919—20 թթ. չերքեզների դեմ՝ Խուդավենդիքյարի շրջանում և 1926—27 թթ. քրդերի դեմ՝ Դերսիմում և այլուր)։

Մելիք-Շահից հետո նրա ժառանգորդները չկարողացան ապահովել ընդարձակ սուլթանության ամբողջականությունը։ Թե՛ սելջուկ սուլթանների և թե՛ անգամ երկու դար հետո մոնղոլ իլխանների ժառանգորդները արևելյան շվայտության մեջ և հարեմների մաշող կյանքում խամրած՝ պարսկերեն ոտանավորներ էին թխում Խորասանից մինչև Իկոնիա՝ իրենց զորապետներին վերապահելով կամ թողնելով երկրի կառավարման դժվարին գործը։ Իսկ այդ զորապետները առանձին երկրամասերում հեշտությամբ անկախանում ու իրենց դինաստիաներն էին հիմնում աթաբեկ, էմիր, անգամ նաև սուլթան ու շահ տիտղոսով։ «Յուրյուկ»—վաչկատունների սանձարձակություններին հակադրվող նրանց հիմնական զորական ուժը վարձկան զորքն էր, որ մեծ մասամբ հավաքագրվում էր ստրուկներից (մամլուկներից)։ Շարունակական ասպատա-

կությունների այդ դարերում, երբ հաղթողը գերուն չէր սպանում, վերջինս դառնում էր հաղթողի ստրուկը, որին տերը հաղթողի սեփականության իրավունքով օգտագործում էր ըստ ստրուկի ընդունակությունների։ XI դարի վերջերից մամլուկությունը Մերձավոր Արևելքում դառնում է տարածված երևույթ, անգամ ինստիտուտ։ Մամլուկներից ոմանց հաջողվում էր, ստրուկ հորջորջվելով հանդերձ, դառնալ ինքնուրույն իշխանավորներ և հիմնել իրենց դինաստիաները։ Եգիպտոսի ցայտուն օրինակից (1250) շատ առաջ ստրուկ էր Գանձակում ուժեղացած Փեհլևինների դինաստիայի հիմնադիր Ելդկուզը (1136), ինչպես կտեսնենք, ստրուկ էր Խլաթում Շահ-ի-Արմենների դինաստիայի հիմնադիր Սուկմանը (1100) և այլն։

* * *

Միխայել Ասորին հայտնում է, որ 1100 թ. «եկն... 'ի կողմանս Հայոց ամիրայ մի Սուգման անուն, ազգաւ թուրք, և կոչեցին զնա Շահի Արմեն, որ է թագաւոր Հայոց»[3]։

Շահ-ի-Արմենների երկրի մասին պատմագրությունը դեռևս բավարարվում է այն ժլատ տեղեկություններով, որ Ստենլի Լեն-Պուլը հաղորդում է իր «Մուսուլմանական դինաստիաները» գրքում, թեև կասկածում է դրանց ճշտության վրա։

«Սուքման Ալ Կութբին,—գրում է նա,—որն այդ անունն ստացել էր ժամանակին Իսմայիլ Կութբ-Ադ-Դինի ստրուկը լինելու համար, 1100 (493) թ. քուրդ մրվանյաններից գրավեց Խլաթ քաղաքը Հայաստանում։ Նրա հետնորդները և մամլուկները շարունակեցին կառավարել այդ մարզը մի հարյուրամյակ, մինչև որ էյուբյաններն այն նվաճեցին 1207 թ.։

| | |
|---|---|
| Սուքման Ադ Կութբին իշխել է | 1100—1112 թթ. |
| Զահիր Ադ-դին Իբրահիմ Շահ-Արմենը | 1112—1127 թթ. |
| Ահմեդը | 1127—1128 թթ. |
| Նասիր Ադ-դին Սուկման II-ը (Միրան -շահը Երկարակյացը) | 1128—1183 թթ. |
| Սեյֆ Ադ-դին Բեկ Թեմուրը | 1183—1193 թթ. |
| Բադր Ադ-դին Աք-Սունքարը | 1193—1198 թթ. |
| Մանսուր Մուհամեդը | 1198—1206 թթ. |
| Իզ-Ադ-դին Բալբանը | 1206—1207 թթ.»[4]։ |

Անգլիացի Լինչը, գրելով Խլաթի մասին Ստենլի Լեն-Պուլից տասնամյակներ հետո և վկայակոչելով նաև իր հայրենակցին, նկատում է, որ «Այդ (այսինքն՝ Մրվանյան—Հ. Թ.) քրդերի տիրապետությունը, ըստ երևույթին, այնքան ծանր էր, որ բնակիչները նրանց քշեցին և Ատրպատականի Մարանդայի սելջուկ նահանգապետի նախկին ստրուկին՝ սելջուկյան ծագում ունեցող մի զորապետի հրավիրեցին քրդերի փոխարեն իշխելու երկրի վրա։ Այդ զորապետը, որի անունը Սոկման էր, հիմնեց այսպես կոչված սելջուկյան դինաս-

3 Միխայել Ասորի, Ժամանակագրութիւն։

4 Стенли Лен-Пуль, Мусульманские династии, էջ 113։

տիա, որը Հայաստանի թագավորների փառահեղ տիտղոսով Ախլաթում թագավորեց ավելի քան մեկ դար (1100—1207)»[5]։

Հայ հին պատմագրությունը էպիզոդիկ տեղեկություններ է հաղորդում վերոհիշյալ շահերից Նասիր-ադ-դին Սուքման 2-րդի (Երկարակյացի) և Սեյֆ-ադ-դին Բեկթեմուրի մասին։

Խոսելով 1139 թ. անցքերի մասին, Վարդան պատմագիրն անդրադառնում է, որ «Եօթն ամօք նախքան զայս Շահի Արմենն տիրեաց երկրին Ալաթայ և այլ բազում քաղաքաց, որ էր թոռն Սուքմանայ, և սպան զհանիկն իւր, որոյ սպանեալ էր զորդիսն և կալաւ իշխանութիւնն։ Եւ իբրև զարգացաւ սա, կամեցան և զսա հեղձուցանել, որ և դերձեալ Աստուծոյ յաջողելովն և տիրեաց երկոտասան քաղաքաց, և կոչեցաւ թագաւոր հայոց. որ է Շահի Արմեն ըստ իւրեանց լեզուին։ Որ և փեսայացոյց ինքնեան զՍալտուխն (Կարնո էմիրը,—Հ. Թ.) և խորհեցաւ նովաւ բարի առնել աշխարհի։ Յորում ժամանակի էր և Ելտկուզ Աթաբակն Նովին բարի կամօք յԱստուծոյ եղեալ երեքեան սոքա քրիստոնէսէր և աշխարհաշէն...»[6]։

Շահ-ի-Արմեն Սուքման II-ի, նրա փեսա՝ Կարնո էմիր Սալդուխի, Գանձակում նստող Ելտկուզ Աթաբեկի հասցեին «քրիստոնէասեր» և «աշխարհաշէն» ածականները, գրեթե նույնությամբ, կրկնվում են նաև XIII դարի հիշատակարաններից մեկում[7]։

Վարդան պատմագիրը բերում է նաև առանձին միջադեպեր, որոնք աներկբա են դարձնում եթե ոչ բոլոր Շահ-ի-Արմենների, ապա իր երկիրը խոր խաղաղության մեջ պահող այս Սուքման II Երկարակյացի (Միրան շահի) քրիստոնեասեր քաղաքականությունը։

Սովի տարին որբերին և այրիներին օգնող միջադեպերգցի մի հայ քահանա երկրե-երկիր շրջելով և քարոզ կարդալով ժամանում է նաև Շահ-ի-Արմենների երկիրը.

«Եւ եկ ընդ առաջ նորա,—հաղորդում է Վարդան պատմագիրը,—Շահ-ի-Արմենն մեծաւ հանդիսիւ, և խնդրեաց ի նմանէ աղօթս, և եմոյծ պատուով ի քաղաքն։ Եւ զի յանդիմանէր զպոռնիկ քահանայսն քսեցին զնա առ Շահն, թէ լրտես է Հոռոմ թագաւորին եւ ետուն քարկոծել զնա. յորոյ վերայ տեսին լոյս երկնային զերիս տիւս և զերիս գիշերս. զոր տեսեալ շահն աւաղեաց զմահ սրբոյն և ետ հրաման պատուիլ զոսկերս նորա»[8]։

Վարդան պատմագիրը բերում է մի ուրիշ, է՛լ ավելի ուշագրավ և պերճախոս միջադեպ։ Աստվածատուր անունով մի մարդ, «զոր Ալբրկայ կոչէին, յԱրճէշ քաղաքէ» հոգևնական ամբողջ կարողությունը բաժանում է աղքատներին. «Եւ տեսեալ զբարեգործութիւն նորա բազումք ի Տաճկաց գային առ նա, և մկրտեալ ի նմանէ լինէին քրիստոնեայք։ Եւ տեսեալ անհաւատիցն, եթէ նա է պատճառք այնմ ամենայնի կամէին սպանել զնա, և յայտնի ոչ իշխէին վասն բազմութեան ժողովրդոց»[9]։ Ուրեմն, ուզում էին սպանել վտանգավոր դարձած հայ սուրբին, կարող էին սպանել, բայց այդ բանը բացահայտ անել չէին կա-

[5] Линч, Армения, т. II, էջ 355։

6 «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ», Վենետիկ, 1862, էջ 123—124։

7 «Մանր ժամանակագրություններ», 13—18-րդ դդ., հատ. 2, էջ 134։

8 Վ ա ր դ ա ն, նույն տեղում, էջ 125։

9 Նույն տեղում, էջ 173։

յող, «վասն բազմութեան ժողովրդոց», որ հայություն էր։ Եթե Իկոնիայում, ինչպես տեսանք, թուրքերը կազմում էին բնակչության միայն տասը տոկոսը, ապա անտարակուսելի է, որ թուրքերի տոկոսը շատ ավելի աննշան պիտի լիներ Տարոն-Տուրուբերանում, որը Շահ-ի-Արմենների թագավորության տերիտորիան էր։

Մեր տեղեկությունները աղքատիկ են խլաթի Շահ-ի-Արմենների մասին, սակայն կան այնպիսի անվիճելի վկայություններ, ինչպես, օրինակ, հարուստ ու նշանավոր հայկական վանքերի առկայությունը Շահ-ի-Արմենների տիրապետության ենթակա հողերում։ Այնտեղ էր գտնվում միջնադարյան հայ աշխարհիկ կյանքի գլխավոր հավաքավայր, ժողովրդական խաղերի դպրոց Ս. Կարապետի վանքը, որ դարեր շարունակ ժողովրդի կողմից անվանվել է «Մշո սուլթան սուրբ Կարապետ»։ Այնտեղ էին գտնվում նշանավոր Ս. Առաքելոց վանքը, այդ վանքի մշակութային աշխատանքը շարունակող Մեծոփա վանքը (հյուսիսում), Մեծոփա վանքի հետ սերտորեն կապված Խառաբաստա կամ Սուհառայի վանքը, որոնք միասին այնքան եռանդուն գործունեություն ծավալեցին ամենայն հայոց կաթողիկոսությունը Էջմիածնում վերականգնելու գործում։

Իր «Հայապատումի» մեջ անդրադառնալով Սասունին և Առաքելոց վանքին, Ալիշանը, չգիտես ինչու երկիրն անվանելով «քրտարոյն», երբ դեռ քրդերը չէին հաստատվել այնտեղ, գրում է.

«Զարմանալի իմն է՝ այն խորտուբորտ, անհարթ, անծանոթ քրտարոյն երկրի մեջ՝ այսպիսի ազնիվ արյամբ, սրտիվ և հոգվով գտվիլն այնպիսի ատեն, նման այն պայծառ գունագույն ծաղկանց, որ թեև քարանց մեջ բուսնին, բայց պարտիզաց ծաղիկներեն թերևս ավելի ակնախտիղ երևին։ Նկատելի է ևս այդպիսի կես վայրենի խորշերում՝ ոչ միայն հայոց հին ազնվականաց սերունդներ գտնիլ, այլև այնքան իշխող և տեր, որ մինչև իրենց կանանց այլ կոչվիլ բագուհի՝ հայ և արար լեզվավ»[10]։

Ալիշանի այս զարմանքի բացատրությունը տալիս են Մատթեոս Ուռհայեցին և արաբ աշխարհագիր Յակուտին։

Բանն այն է, որ Կապադովկիայում կոտորված Բագրատունիների և Արծրունիների զարմերը, ինչպես նաև աշխարհական մնացած Պահլավունիները ապավինել էին Եդեսիա (Ուռհա), որտեղ Բարսեղ (Վասիլ) անունով մի հայ իշխանի հաջողվել էր տեր դառնալ քաղաքին։ Խաչակիրներից խաբվելով, 1098 թ. այս Վասիլը Եդեսիան հանձնել էր ֆրանկներին։ Դամասկոսի Զանգյանները 1144 թ. գրավում են Եդեսիան և կոտորում ու փախուստի մատնում քաղաքի քրիստոնյա բնակչությունը։ Շնորհալին իր «Ողբ Եդեսիոյ» մեջ երգում է «զինակիրք որք են վերջին». իսկ Մատթեոս Ուռհայեցին, որ բանաստեղծ չէր, այլ ժամանակագիր, առանց բանաստեղծական այլաբանության, պարզ գրում է.

«Եւ եղև սուգ սաստիկ ամենայն տանն Հայոց. վասնզի առ նա (Բարսեղ իշխանը,—Հ. Թ.) էին ժողովեալ մնացեալ զօրքն Հայոց և ամենայն ազգ Բագրատունեաց և Արծրունեացն և որդիքն թագաւորացն Հայոց և ամենայն ազգն Պահլաւունեանցն հանդերձ ազատագունդ զօրօքն հայոց առ նա կային հանգու-

10 Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, է. 391։

դեալ մեծաւ փառաբանութեամբ և աթոռ հայրապետութեան առ նա եղեւ (ի Կարմիր վանս)»[11]։

Եդեսիայի անկումից (1144) հետո հայ թագավորական և նախարարական տների վերջին զարմերը ապաստանելու այլ տեղ չունեին, քան Շահ-ի-Արմեն-ների երկիրը։ Արար հեղինակը խոսելով Կիլիկիայի Ռուբինյանների հանցագործության մասին, երբ Ռուբինյանները 1193—1194 թթ. սպանեցին Գրիգոր տղա Պահլավունի կաթողիկոսին և նրա քրոջ որդիներին՝ Հեթում-Վասիլ և Շահնշահ Պահլավունի-Մամիկոնյաններին, ապա խեղդամահ արին Գրիգոր Քարավեժ Պահլավունի կաթողիկոսին, գրում է. «Եվ այս կերպով վերջացավ Դավթի գերդաստանի կաթողիկոսությունը։ Կը լսեմ, թե հիշյալ ընտանիքեն մարդ չէ մնացած հիմա այդ կողմերը՝ խնդրո առարկա պաշտոնը ստանձնելու համար։ Այդ գերդաստանին պատկանյալ անհատներ կան Խլաթի կողմերը միայն»[12]։

Այսպիսով, Շահ-ի-Արմենների երկիրն էին ապավինում ո՛չ միայն հողն ու քաղաքական իշխանությունը կորցրած և արևմուտքում հալածանքի ենթարկվող հայկական թագավորական ու նախարարական տների վերջին զարմերը, այլև Շահ-ի-Արմենների հովանավորության տակ էին մտնում Սասունում ու Վասպուրականում դեռևս իրենց հայրենականը պահպանած հայ իշխանները։

Վարդան Արևելցին հաղորդում է, որ Սուկման II Երկարակյացը (Միրան Շահը) մի անգամ գնում է Սասնո զով լեռներում քեֆ անելու և որ այդպիսի մի ուղևորության ժամանակ Սասնո իշխան Վիգենը շրջապատում է այն տունը, որտեղ գտնվում էր Սուկմանը։ Վիգենը բռնում է Խլաթի թագավորին, բայց ուխտ կապելով նրա հետ, սիրով բաց է թողնում։ «Այս Շահի Արմեն գնացեալ ի Սասուն յօրանայր ի գեօղի միում. և լուեալ Վիգենայ տեառն երկրին երթեալ ի գիշերի միում պատէր զտունն յորում կայր, և յասելն ումեմն ի կատակս. Այ Վիգեն, ուր ես, եա պատասխանի ընդ երդն և ասէ. կամ աւասիկ շնորհօքն Աստուծոյ։ Եւ կալեալ տանի յամուրս իւր. և զկնի աւուրց արձակէ ուխտիւ և երդմամբ սիրոյ»[13]։

Ինչպես տեսնում ենք, Խաղաղասեր Սուկմանի (Միրանի) և Վիգենի հարաբերությունները այնքան էլ թշնամական չեն եղել։ Այսպիսի փոխհարաբերությունների պայմաններում միանգամայն անտարակուսելի է դառնում Միխայել Ասորու այն հաղորդումը, որ Սասունի հայ իշխանները հնուց անտի իրենց ձեռքը պահած բերդերը կամովին հանձնում են Շահ-ի-Արմեններին՝ հարավից ճնշում գործ դնող Օրթոկյանների դեմ վստահելի և զորեղ պաշտպան ունենալու համար։

«Ի սոյն ամի,—գրում է Միխայել Ասորին 1165 թ. համար,—բերդեր զոր ունէին Հայք Սասնոյ, նեղեալ ի Մուփարկնայ ամիրայէն, տուին ի Շահի Արմենն՝ յամիրայն Խլաթայ, զայն որ ունէին ի հին ժամանակաց»[14]։

Այս նույն իրադարձությունը Վարդան Արևելցին հաղորդում է հետևյալ կերպ.

11 Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրություն, էջ 323—324։
12 Յակուտի, տե՛ս «Վեֆայաթ Ալայան», Դաշիրև, էջ 323—324։
13 Վարդան, նույն տեղում, էջ 124։
14 Միխայել Ասորի, Ժամանակագրություն, էջ 373։

«Սա (=Սուքման II) էառ զԱմուկ ի Խեւսենկայ և զՍասունք ի Վիգենայ ամենայն վանորէիւք, և պահէր ի խոր խաղաղութեան դամս վաթսուն»[15]։

Եթե, ինչպես հաղորդում է Վարդան Արևելցին, Խլաթում թագավորող Շահ-ի-Արմենները հաճախ իրար կոտորում էին («և սպանեալ զհանիկն իւր, որոյ սպանեալ էր զորդիսն...») գահին տիրանալու համար, ապա արտաքին հարաբերությունների մեջ նրանք ճգնում էին հաշտ քաղաքականություն վարել և այդ նպատակով հաճախ էին դիմում խնամիական կապերի հաստատմամբ հարևանների հետ խաղաղությունն ամրապնդելու միջոցին։ Ինչպես հաղորդում է Իբն Խալիքանն իր «Վեֆայաթ Աայան»-ում, Սուկման II-ն իր աղջիկը կնության է տալիս Կարնո էմիր Սալդուխին։

Սուկման II Երկարակյաց Շահ-ի-Արմենի անժառանգ մահը վերջ է դնում նրա վաթսունամյա (1128—1185) խաղաղ տիրապետության շրջանին։ Իրար են խառնվում նրա գահին տիրանալ ցանկացողները։ Խլաթից բացակա էր նրա մամլուկ զորավար Բեկթեմուրը, որը նրա մահվան լուրն առնելով շտապում է Խլաթ։ Խլաթ են շտապում նաև Սասունի տերերը՝ Հեթում և Շահնշահ եղբայրները, որոնք Պահլավունի կաթողիկոսի քրոջ որդիներն էին։ Հյուսիսից շարժվում են Փեհլևինները, որոնք տիրակալության իրավունքներ էին վերապահում իրենց այդ երկրի նկատմամբ։ Հարավում Մոսուլի տակ էր գտնվում Սալահեդդինի բանակը։ Նրա սյուզերենությունն ընդունած Դիարբեքիրի շրջանի օրթոկյանները և մրվանյան քրդերը,—որոնց գլուխ այդ ժամանակ կանգնած էր Քութբ-ադ-դինը (1185—1200 թթ.),—դժգոհ էին, որ զրկվել էին Սասունի ամառային արոտավայրերից։ Նրանք շտապեցնում էին իրենց սյուզերենին՝ Սալահեդդինին։ Բեկթեմուրն անորոշ դրության մեջ էր։ Նա սկզբում կապվում է Սալահեդդինի հետ և խոստանում է Խլաթը հանձնել նրան և փոխարենը, վասալական կախման կարգով, ստանալ մի ուրիշ քաղաք։ Բայց շուտով Փեհլևինները մոտենում են Խլաթին և, իրենց աղջկան կնության տալով Բեկթեմուրին, խառնում են Սալահեդդինի հաշիվները։

1185 թ. այս իրադարձությունների մասին արաբ պատմագիրը գրում է.

«Սալահեդդինը մնաց Մոսուլի առջև, մինչև որ լուր եկավ թե հայերու իշխանը (շահ էրմեն) և Խլաթի տերը՝ Նասրեդդին Մոհամմեդ Բին Իբրահիմ Բին Սոքման էլ Գոթբի մեռած է և թե գերին (մեմլուք) Բեկթեմուր հաջորդած է անոր։

Տեսնելով, որ հարևան իշխաններ աչք ունին Խլաթի վրա, և մտադրած են այդ քաղաքին վրա քալելու, Բեկթեմուր մարդ ղրկելով Սուլթանին ցանկություն գրգռեց Խլաթի վրա և համաձայնեցավ անոր հանձնելու երկիրը գոհացուցիչ փոխարինությունով մը։ Շահ էրմեն մեռած էր նույն տարին Գրաբի էլ Ախրը, հինգշաբթի օրը։ Այս պատճառով Մուսուլեն հեռանալով՝ Սուլթան Սալահեդդին դեպի Խլաթ ուղղվեցավ նույն ամսու 20-ին, իրեն առաջապահ ունենալով Իրբիլի տերը՝ Մուզաֆարեդդինը, որ այդ պահուն Հարրանի կիշխեր և Նասրեդդին Մոհամմեդ Բին Էսսեդդին Շիրքուհը, որ Սալահեդդինի հորեղբոր որդին էր։ Անոնք իջեանեցին Խլաթի մոտ էթ Թազարա կոչված գյուղը և Սալահեդդինը պատգամավորներ ղրկեց Բեկթեմուրին՝ համաձայնության պայմանները որոշելու համար։ Այս պատգամավորները Բեկթեմուրի մոտ հասան այն պահուն, երբ Ազրբեյջանի, Արանի և Պարսկական Իրաքի տերը Շեմսեդ-

15 Վարդան, նույն տեղում։

դին Փեհլևան Բին Հելդըքյուզ Խլաթի մոտեցած էր՝ քաղաքը պաշարելու նպատակով։ Մարդ ղրկելով՝ Բեկթեմուր ազդարարեց անոր, որ եթե իրմե չհեռանա, ինք Սուլթան Սալահեդդինի պիտի հանձնե երկիրը։ Ասոր վրա Շեմսեդդին հաշտվեցավ Բեկթեմուրի հետ, իր աղջիկը կնության տվավ անոր և հեռացավ։ Ապա մարդ ղրկելով Սալահեդդինի՝ Բեկթեմուր ետ առավ Խլաթը հանձնելու մասին տված խոստումը»[16]։

«Դրանից (այսինքն 1184—1185 թթ. դեպքերից հետո, երբ Գրիգոր տղա կաթողիկոսի քրոջ որդին՝ անհող մնացած սասունցի իշխան Շահնշահը փորձել էր թուրքմենների օգնությամբ խլել կաթողիկոսանիստ Հռոմկլա բերդը) հետո,—կարդում ենք Միխայել Ասորու «Ժամանակագրության» ֆրանսերեն թարգմանության մեջ,—մեռավ նաև Հայաստանի իշխան՝ Միրան Ճահի-Արմեն էմիրն, տարիքոտ մի մարդ, որը բոլորովին հարազատ զավակ չուներ։ Ահա թե ինչու նրա սպաներից մեկը, որ կոչվում էր Բեկթեմուր, մեջտեղ կանգնեց։ Եվ որովհետև շտապում էր գնալ ու թագավորել, ապա հարկադրված էր անցնելու Սասուն սարի առջևով։ Այստեղ նա հանդիպեց հայոց կաթողիկոսի քրոջ տղային, որ Հռոմկլայից ապավինել էր այդտեղ։ Նա բռնեց Բեկթեմուրին, մինչև որ վերջինս խոստում տվեց նրան, թե կվերադարձնի նրա հոր՝ Բակիանի բերդերը»[17]։

Նույն իրադարձությունների մասին հայ պատմագիրը գրում է.

«Եւ ի գալ միւսոյ ամին մեռաւ Շահի-Արմենն անորդի, և աւեր և սուր և գերութիւն բազմացաւ ի վերայ աշխարհի նորա՝ ի շրջակայ ազգացն։ Եւ զի թոռն Վիգենայ՝ Շահնշահ քեռորդի տեառն Գրիգորի կաթողիկոսի առընթեր կայր մահուան շահին. առեալ զիւրսն անկանի ի Սասունս, և անդ անկաւ ի ձեռս նորա Բեկդամուրն՝ որ էր իշխան ամենայն տան շահին. առնու ի նմանէ զբերդն Թառձեան, և ուխտիւ արձակեաց զնա, որ և ստեաց ուխտին ի տիրելն իւրում աթոռոյ շահին. և զայն ես և զամենայն Սասունք եհան ի նմանէ, և արկ ընդ հարկս զեկեղեցիս և զուխտս»[18]։

Պետք է ենթադրել, որ արաբ պատմագրի, «Էթ-Թագարան» Վարդան Արևելցու հիշատակած «Թառձեան» բերդն է, որտեղ և տեղի են ունեցել ընդհարումները։

Բեկթեմուրը մեռնելով 1193 թ., Խլաթի գահն ապահովում է իր որդու՝ Բադր Ադ-դին Աք Սունքարի համար, որն այդ գահի վրա նստում է մինչև 1198 թ., երբ Սուկմանների տնից ոմն Մանսուր Մոհամեդին հաջողվում է տիրել շուրջ մեկ դար իրենց տոհմին պատկանած գահին։ Ութը տարի հետո, 1206 թ. այս Մանսուրն էլ է մեռնում անժառանգ։ Խլաթի գահը մեկ տարով անցնում է նրա ստրուկ զորավար Իզ-ազ-դին Բալբանին (1206—1207), որի միամյա թագավորության ժամանակ Խլաթը նորից մրցակցության առարկա է դառնում հակոտնյա ուժերի համար։

1207 թ. Սալահեդդին սուլթանի եղբոր՝ Ադիլ-Սայֆադինի որդին՝ Նաջմադին Ավհադը արշավում է Խլաթի վրա։ Բալբանը օգնության է կանչում Իկոնիայի Սուլթանին և Էրզրումի էմիրին։ Միացյալ ուժերով նրանք թեև ետ են շպրտում Ավհադին, սակայն Իկոնիայի Սուլթանը, ցանկանալով իր երկրին

16 Բին Խալլիքան, Վեֆայաթ Աայան, Կահիրե, 1935, է. 237։

17 Chabot. հատ. 3, էջ 398։

18 Վարդան, նույն տեղում, էջ 133։

միացնել Խլաթի թագավորությունը, սպանում է Բալբանին ու փորձում մտնել նրա մայրաքաղաքը: «Բայց Խլաթի բնակիչները,— ասում է ժամանակակից արաբ պատմագիր Իբն-ալ-Ասիրը,— նրան ետ շպրտեցին: Այն ժամանակ նա գնաց Մանազկերտի վրա, բայց Մանազկերտի բնակիչներն էլ չհնազանդեցին նրան ու հեռու քշեցին: Այդ ժամանակ Խլաթի բնակիչները իրենց մոտ են հրավիրում Նաջմադին Ավհադին, որը ետ է գալիս ու տիրանում Խլաթին և նրա շրջանին, բացառությամբ նրա մի փոքր մասի (Սասո՞ւն—Հ. Թ.): Սակայն հարևան թագավորները չէին ցանկանում (նրա հոր պատճառով), որ նա տիրեր Խլաթի շրջանին: Ճիշտ այդպես էլ նրանից վախենում էին և նրան չէին սիրում վրացիները, և այդ պատճառով էլ հաճախակի հարձակումներ էին գործում Խլաթի շրջանի և նրա քաղաքների վրա...

Խլաթն ու նրա շրջանը գրավելուց հետո սուլթան ալ-Ադիլի որդի սուլթան ալ-Ավհադ Նաջմադդինը գնաց Մանազկերտի վրա, որպեսզի այնտեղ էլ կարգ հաստատեր: Բայց հենց որ նա հեռացավ Խլաթից, քաղաքի բնակիչները հարձակվեցին քաղաքում մնացած նրա զորքի վրա և դուրս քշեցին: Բնակիչները ապստամբություն բարձրացրին և պաշարեցին միջնաբերդը,— որտեղ ապաստանել էին ալ-Ավհադի կողմնակիցները,— և հռչակեցին Շահ-ի-Արմենի նշանառուն, թեև նա արդեն մեռել էր, դրանով ցանկանալով ասել, որ իշխանությունը վերադարձվի նրա կողմնակիցներին և մամլուկներին: Երբ ապստամբության լուրը հասավ սուլթան ալ-Ավհադին, նա ետ դարձավ: (Միաժամանակ) զորք եկավ ալ-Ջեզիրայից, որով նա ուժեղացավ և պաշարեց Խլաթը, որի բնակիչների մեջ տարաձայնություններ առաջ եկան: Իրար նախանձելով, ոմանք անցան Ավհադի կողմը: Սուլթանը գրավեց քաղաքը և շատ մարդ կոտորեց ու գերի վերցրեց նրա ներկայացուցիչներից շատերին, որոնց ուղարկեց Մայաֆարկին: Նա ամեն օր կոտորում էր բնակիչներին, այնպես որ շատ քչերը փրկվեցին: Դրանից հետո Խլաթի բնակիչները ստրկացվեցին և տարաձայնություններ սկսվեցին պատասխանների (աժերի՞—Հ. Թ.) մեջ, որոնց ձեռքին էր մինչ այդ գտնվում իշխանությունը»[19]:

Արաբ պատմագրի հաղորդումների մեջ սոսկ մեր ընդգծումները բավական են ցույց տալու համար, որ Խլաթի բնակչությունը տեսնում էր, որ էյուբյանների հաղթանակով Խլաթի թագավորությունն անջատվում էր Հյուսիսային Հայաստանից, որի հետ մշակութային մեկ ամբողջություն էր կազմում: Այս դրությունը չէր կարող հաճելի լինել Հյուսիսային Հայաստանի նոր տերերին: Գանձակի Փեհլևիններն այդ ժամանակ թուլացել էին, սակայն նրանց փոխարեն ուժեղացել էին վրաց Բագրատունիները, որոնց տրամադրության տակ կար հայ-վրացական ուժեղ զորք: Զաքարե սպասալարը և Իվանե աթաբեկը, 1208 թ., մեկ տարով ուշացած, հայտնվում են Խլաթի պարիսպների տակ՝ նախկին դրությունը վերականգնելու համար: Այդ արշավանքն անհաջող է անցնում: Սակայն 1209—10 թթ. նրանք նորից են արշավում Խլաթի վրա: Ուժերի գերակշռությունը բացահայտորեն Զաքարեի և Իվանեի կողմն էր: Ավհադը ետ է քաշվում ու ապավինում է Խլաթի պարիսպների պաշտպանությանը: Սակայն Իվանեն անզգուշորեն թակարդ է ընկնում ու գերվում-տարվում Խլաթ: Զաքարեն տեսնելով իր եղբոր կյանքին սպառնացող վտանգը, դադարեցնում է մարտական գործողությունները և սպառնալից նամակով դիմում է ոչ թե Ավհա-

[19] Ибн-аль-Асир, Тарих-аль-Кямиль, изд. Азфана, Баку, 1940, էջ 132—133:

դին, այլ խլաթի բնակչությանը, որը, ինչպես տեսանք, գերազանցապես հայկական կազմ ուներ։ Սպառնալիքն ազդեցություն է գործում, և պատերազմը վերածվում է հարսանյաց հանդեսի։

«Ապա արարեալ սէր ընդ միմեանս, խնդրեցին զդուստր Իվանէի ի կնութիւն, եղև որպէս խնդրեցին. առին պատանդս և արձակեցին զ Իւանէ։ Եւ նորա երթեալ ի տուն իւր, առաքեաց զդուստր իւր, որ եղև կին Կզոյն, և յետ նորա Աշրափին։ Բազում օգուտ եղև գալ կնոջ ի տուն Սուլտանացն, զի դիւրեցին քրիստոնէիցն, որ ընդ իշխանութեամբ իւրեանց էին, ևս առաւել երկրին Տարօնոյ. զի վանորայքն՝ որ անդ էին, ընդ հարկիւ էին, թեթևացուցին զսակ հարկին, և կիսոց զամէնն իսկ թողին... և էր անուն կնոջն Թամթայ։ Եւ այսպես եղև սէր և միաբանութիւն ընդ թագաւորութիւնն վրաց և ընդ իշխանութիւն Սուլտանացն»[20]։

Այսպիսով, գերի ընկած Իվանեն իր դստեր՝ Թամթայի կնության է տալիս Ավհադին և նրանք բարեկամանում են՝ ապահովելով քրիստոնյա բնակչության շահերը։ 1212 թ. Ավհադը մեռնում է։ Նրա եղբայր Աշրափը, որ Մայաֆարկինի տերն էր, իր սուլթանությանն է միացնում խլաթը, ու իր ժամանակի սովորությամբ և հանուն հայ-վրացական ու էյուբյանների բարեկամության հարատևության, ամուսնանում է իր եղբոր այրու՝ Իվանեի քրիստոնյա դստեր Թամթայի հետ։ Բայց տեղեկություններ չունենք, որ նա Թամթային տարած լինեի Մայաֆարկին։ Ընդհակառակը, հետագա դեպքերը հաստատ ցույց են տալիս, որ Թամթան շարունակաբար մնացել է խլաթում։ Այսպիսով, երրորդ անգամ, ապահովվում է «քրիստոնէասէր» և «աշխարհաշէն» քաղաքականության հաղթանակը խլաթի թագավորության սահմաններում։

1218 թ. Աշրափի հայր Ադիլ-Սայֆադինը մեռնում է Դամասկոսում. Աշրաֆն իր եղբոր՝ Ղազիին խլաթի կառավարիչ կարգելով, փորձում է նստել հոր գահին։ Այդ բանը նրան հաջողվում է միայն 10 տարի հետո, 1228 թ.։ Մինչև այդ խլաթի կառավարիչ կարգված Ղազին 1224—1225 թթ. փորձում է ապստամբել ավագ եղբոր դեմ և ինքնուրույն դառնալ խլաթում։ Աշրաֆը 1225 թ. վերագրավում է խլաթը, պատժում եղբորը և՝ նորից Դամասկոսի գահին նստելու հոգսով տարված՝ խլաթը հանձնում է Թամթային՝ Ալի անունով մի զորականի օգնական-հեջուբ կարգելով նրան։

Մոնղոլներից պարտված և Հնդկաստանի վրայով Հյուսիսային Պարսկաստան ապաստանած խորեզմի սուլթան Ջալալ-էդ-դինը Ադրբեջանի Փեհլևիններին, վրաց Բագրատունիներին և Հայաստանի ու Փոքր Ասիայի էմիրներին ու սուլթաններին կոչ է անում միանալ ու համատեղ դիմադրություն ցույց տալ մոնղոլներին։ Անպատասխան մնալով նա սկսում է ասպատակել ու ավերել իր կոչին չարձագանքող Մերձավոր Արևելքի ֆեոդալական մեծ ու փոքր դինաստիաների երկրները։ 1226 թ. Գառնո մոտ նա ջախջախում է հայ-վրացական բանակը, ապա նույն տարին մտնում է Թիֆլիս, հիմնահատակ ավերում է քաղաքը և կոտորում ու կրոնադարձ անում քաղաքի քրիստոնյա բնակչությունը, տասը օրով ասպատակում է Արխազիան (ուր ապավինել էր վրաց Ռուսուդան թագուհին) և ձմեռնամուտին մոտենում է խլաթին։ Թամթան քաղաքի (հավանաբար՝ նաև շրջանի) բնակչության օժանդակությամբ եռանդուն դիմադրություն է ցույց տալիս Ջալալ-էդ-դինին։

20 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1910, էջ 156—157։

Արար ժամանակակից պատմագիր. Իբն-ալ-Ասիրը Խլաթի վրա Ջալալ-էդ-դինի արշավանքի մասին գրում է. «Նա մոտեցավ քաղաքին և սաստիկ կռիվ սկսեց նրա բնակիչների հետ։ Նրա զորքերը մոտեցան քաղաքի պարիսպներին, բայց շատ սպանվածներ տալով ետ նահանջեցին։

Նա երկրորդ անգամ գրոհեց քաղաքի վրա և արյունալի կռիվ սկսեց նրա բնակիչների հետ։ Նրա զորքը մեծ կորուստ պատճառեց Խլաթի բնակիչներին, ընդհուպ մոտեցավ քաղաքի պարիսպներին, մտավ նրա արվարձանը և սկսեց անխնա թալանել ու գերի վերցնել կանանց։ Այդ տեսնելով Խլաթի բնակիչները վայրացան և սկսեցին սիրտ տալ միմյանց։ Նրանք նորից գոտեմարտի բռնվեցին զորքի հետ, կռվեցին ու խորեզմցիներին դուրս քշեցին քաղաքից...

Մի քանի օր հանգստանալուց հետո Ջալալ-էդ-դինը նորից գրոհեց քաղաքի վրա, ինչպես արել էր առաջին օրը։ Խլաթի բնակիչները կռվեցին, մինչև որ քաղաքից ետ քշեցին նրա զորքը։ Բնակիչները արիաբար էին կռվում և քաջաբար պաշտպանվում, որովհետև նրանք տեսել էին, թե ինչպես իրենց վատ էին պահում խորեզմի զորքերը, երբ կողոպտում էին երկիրը, թե ինչպիսի այլասերվածներ էին նրանք։ Խլաթի բնակիչները կռվում էին այնպես, ինչպես կռվում են իրենց, իրենց ընտանիքը և իրենց ինչքը պաշտպանող մարդիկ»[21]։

Խլաթը գրավելու այս երեք անհաջող փորձից հետո Ջալալ-էդ-դինը զորքը ետ է տանում Գանձակի շրջանը, որտեղ ճնշելով իվայիտների ապստամբությունը և ետ մղելով թաթարական հետախույզներին, ամրապնդում է իր թիկունքը և ավելի հզոր բանակով 1228—29 թթ. ձմռանը նորից հայտնվում է Խլաթի պարիսպների տակ։ Աշրաֆը Նասիր Սալահ-էդ-դին Դավուդից (1227—1228) նոր էր գրավել Դամասկոսը և ի վիճակի չէր օգնության հասնելու Խլաթին։ Թամթան նորից միակ եռանդուն դիմադրություն է ցույց տալիս խորեզմի սուլթանի զորքերին. բնակչությունը նրա կողմն էր։ Քանի կռիվը երկարում է, բնակչությունն այնքան ավելի եռանդուն մասնակցություն է ցուցաբերում կռվին, որը վերածվում է քաղաքի քրիստոնյա բնակչության ինքնապաշտպանությանը գրոհող մահմեդական զորքի դեմ։ Երբ կռիվն այս նոր բնույթն է ստանում, քաղաքի պաշտպանության համար Աշրաֆի թողած մահմեդական զորքի որոշ զորապետներ դավաճանում-անցնում են Ջալալ-էդ-դինի կողմը, և խորեզմցիները ներխուժում են քաղաք։

Իբն-ալ-Ասիրը Ջալալ-էդ-դինի երկրորդ արշավանքի մասին գրում է.

«Այդ, 626 (1228—29) թվականին Ջալալ-էդ-դինը պաշարեց սուլթան Աշրաֆին ենթակա Խլաթ քաղաքը, որտեղ կային վերջինիս զորքերը։ Նրանք պաշտպանվում էին և Խլաթի բնակիչները օգնում էին նրանց՝ վախենալով Ջալալ-էդ-դինից, որին ատում էին նրա վատ վարվեցողության համար...

Այդ պաշարման ժամանակ Ջալալ-էդ-դինը մեծ եռանդ և զարմանալի համբերություն ցուցաբերեց։ Նա բաբաններ մոտեցրեց քաղաքի պարիսպներին և շարունակ քար էր նետում, մինչև որ ավերեց պարսպի մի մասը, որը սակայն, վերականգնվեց բնակիչների ջանքերով...

Քաղաքը նրան հանձնվեց մի քանի էմիրների[22] կողմից (1229 թ. մարտ ամսին)։ Քաղաքի անկման ժամանակ էմիրներից մի քանիսը ամրացան միջ-

---

[21] Ибн-аль-Асир, էջ 163։

[22] Ֆրանսերեն թարգմանության մեջ՝ «Էմիրներից մեկի կողմից». տե՛ս „Journale Asiatique", 1849, էջ 501։

Ներերգում, բայց Ջալալ-էդ-դինը շարունակեց կռվել նրանց հետ, իսկ քաղաքի բնակիչներին անխնա կոտորեց։ Նա կոտորում էր բոլոր նրանց, որոնց գտնում էր քաղաքում, բայց քաղաքում քիչ մարդ էր մնացել, որովհետև մի մասը սարսափից հեռացել էր քաղաքից, մի մասն էլ հեռացել էր Ներգևլյով սաստիկ սովից, իսկ մի մասն էլ մեռել էր ուտելիք չճարելու պատճառով, որովհետև Խլաթի բնակիչները նախ կերել էին մանր անասունները, հետո աստիճանաբար կովերը, գոմեշները, ձիերը, ջորիները, էշերը, շներն ու կատուները։ Լսել եմ, որ նրանք մուկ էին բռնում և ուտում։ Նրանք ցուցաբերեցին մինչև այդ չտեսնված տոկունություն»[23]։

Կիրակոս Գանձակեցին գրում է.

«Գնաց նա (Ջալալ-էդ-դինը) ի քաղաքն Խլաթ, որ յաշխարհին Բզնունեաց. և էր նա ընդ իշխանութեամբ Աշրաֆ Սուլտանին. և ետ պատերազմ ընդ նմա, և առ զնա. էր անդ և կին Սուլտանին, դուստր Իվանէի, Թամթա անուն, զոր վերագոյն յիշեցաք. առ զնա իւր ի կնութիւն...»[24]։

Մահմեդական սուլթանները մեծ հարեմներ ունեին և մեծ հանդեսով կատարած նրանց ամուսնությունները գերազանցապես քաղաքական դաշնագրություններ էին նրանց համար։ Նրանց պաշտոնական կանայք համարներ ունեին՝ առաջին, երկրորդ և այլն։ Հարեմում փակվում էին հարճերը, իսկ պաշտոնական կանայք ունեին իրենց տունը, տնտեսությունը, կալվածքները, անգամ բերդերն ու զորքը։ Քրիստոնյա Թամթան Խլաթի մահմեդական տերերի տան հարս էր եկել դաշնագրության կարգով։ «Ըստ այդ դաշնագրության,—գրում է ակադ. Հ. Մանանդյանը,—Զաքարեն և Իվանեն պարտավորվել էին, ինչպես վկայում է աշխարհագիր Արուլֆիդան, վերադարձնել բազմաթիվ ամրություններ ու 5000 մահմեդական գերի, վճարել որոշ գումարներ, զինադադար անել 30 տարի ժամանակով»[25]։ Թամթայի առաջին ամուսինը՝ Նաջմադին Ավհադը, ինչպես գիտենք, 1212 թ. մեռավ։ Ավհադի ավագ եղբայր Աշրաֆը դարձավ Խլաթի տերը և Զաքարե սպասալարի ու Իվանե աթաբեգի հետ կնքած դաշինքը շարունակելու համար ամուսնացավ Թամթայի հետ։ Սակայն Աշրաֆի հիմնական նստավայրը Մայաֆարկինն էր (մինչև 1228 թ.), ապա Դամասկոսը (1228—1232 թթ.)։ Այսպիսով, բացակայելով Խլաթից, նա Թամթային իր հետ չտարավ ոչ Մայաֆարկին, ոչ էլ Դամասկոս։ Հայտնի է, ինչպես ասացինք, որ Աշրաֆը 1218 թ. որպես փոխանորդ (վալի) Խլաթ է ուղարկում իր կրտսեր եղբայր Գազիին։ Կիրակոս Գանձակեցին Թամթայի մասին խոսելիս ասում է, «որ եղև կին Կզոյն, և յետ նորա Աշրաֆին»[26]։ Ստույգ հայտնի է, որ Թամթան Գազիի կինը չի եղել. նա եղել է, ինչպես արդեն ասել ենք, Ավհադի, ապա Աշրաֆի կինը։ Կիրակոս Գանձակեցու այս շփոթումը վկայում է, որ Թամթան շարունակ մնում էր Խլաթում, որ Գազիի փոխանորդության վեց-յոթ տարիներին (1218—1225) նա Գազիի հետ գտնվում էր նույն քաղաքում։ Հայտնի է, որ Գազիի ապստամբության փորձը ճնշելուց (1225) հետո Աշրաֆը նորից գնաց Մայաֆարկին։ Գազիին պատժելուց և Խլաթից վտարելուց հետո Աշրաֆը, ինչպես ասվեց, Խլաթը թողնում է Թամթային՝ Ալի անունով մի օգնական-հեջուբ

23 Ибн-аль-Асир, էջ 168։

24 Կիրակոս Գանձակեցի, էջ 215։

25 Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Գ, էջ 141։

26 Կիրակոս Գանձակեցի, էջ 156։

տալով նրան ոչ-էյուբյանների տոհմից։ Այս ամենը մենք ասում ենք հայ, արաբ և ասորի ժամանակագիրների ու աշխարհագիրների տված տեղեկությունների հիման վրա։ Սակայն վրացական աղբյուրը (Անանուն պատմիչը) մանրամասնությունների մեջ չմտնելով ուրիշ բան է ասում. Թամթայի Խլաթ հարս գալը նա համարում է վրաց քաղաքականության հաղթանակ։ «Զաքարեն,—գրում է նա,—ստիպել էր Խլաթի սուլթանին խոնարհվել և հաղթությամբ զարդարված առաջարկել էր վերջինին հաշտության հիմունքները»[27]։ Ակադեմիկոս Հ. Մանանդյանը գրում է. «Իբն-ալ-Ասիրը և ասորական ժամանակագիր Աբուլֆարաջը հաղորդում են, որ հեջիրի 605 թ. (—16 հուլ. 1208—5 հուլիսի 1209) վրացական զորքերը մտան Խլաթի ամիրայության շրջանները, գրավեցին Արճեշը և վերցրին մեծ ավար ու գերիներ։ Նրանք դիմադրության չէին հանդիպել, որովհետև Նեջմադդին էյուբ Աուխադը, որը նոր էր նվաճել Խլաթի ամիրայությունը, դեռես իր իշխանությունը չէր համարում կայուն և հաստատուն։

Այնուհետև հետևյալ տարին (1209—1210) նրանք նորից վերադարձան այստեղ և պաշարեցին Խլաթ քաղաքը։ Զաքարեն և Իվանեն, ըստ երևույթին, իրենց նպատակ էին դրել ազատագրել պատմական Հայաստանի նաև հարավային երկրները»[28]։

Այս ամենից հետո եթե հիշենք, որ 1210 թ. մինչև Ջալալ-էդ-դինի կողմից գրավելը (1229), այսինքն ամբողջ 19 տարի, քանի Խլաթը պատկանում էր էյուբյաններին, Թամթան մնաց միմիայն Խլաթում, ապա պետք է ենթադրել, որ այդ տասնամյակներին հզորացած ու հաղթական Զաքարյանների դուստրը մի հասարակ փրկագին չէր, այլ «պատմական Հայաստանի նաև հարավային երկրները» ազատագրելու նպատակը հետապնդող քաղաքականության ներկայացուցչուհին, նա Խլաթում ուներ իր ապարանքը, իր տնտեսությունը, իր կալվածքները, իր գյուղերը և իր զորքը։ Ջալալ-էդ-դինի հրոսակախմբերի դեմ Խլաթի բնակչության մղած համառ ու հերոսական կռիվների մանրամասն պատմագրի ձլատ նկարագրության ամեն մի տող այդ է վկայում։

Ջալալ-էդ-դինի քարտուղար և պատմագիր Ալ-Նիսավին, որը Խլաթի գրավման ժամանակ իր տիրոջ մոտ չէր գտնվում, խոսելով այդ դեպքերի մասին, ասում է, որ Ջալալ-էդ-դինը «տիրացավ» Աշրաֆի կնոջը։ Կիրակոս Գանձակեցին թեև առաջին անգամ ասում է «առ զնա իւր ի կնութիւն» (էջ 215), սակայն կրկին անգամ անդրադառնալով այդ դեպքերին, ուղղում է իրեն և գրում, որ Թամթան «գերեցաւ ի խորազմեցի Սուլտանէն Ջալալադինէն»[29]։ Պարսկական Ատրպատականում հավաքելով խորտակված Խորեզմի թագավորության պարտված զորքի մնացորդներին և մոնղոլների սարսափից դեպի արևմուտք փախչող թուրքական այլ ցեղերից համալրելով իր զորքը, Ջալալ-էդ-դինը պարտված փախստականի դաժանությամբ ասպատակում էր Հյուսիսային Ատրպատականը, Վրաստանը, Հայաստանը։ 1226 թ. Ջալալ-էդ-դինը Գառնու մոտ ջախջախել էր Թամթայի հոր՝ Իվանեի և եղբոր՝ Ավագի հայ-վրացական զորքը։ Իվանեն ու Ավագը փախուստի դիմելով հազիվ էին փրկել իրենց կյանքը։ Նույն տարին Ջալալ-էդ-դինը գրավել էր Տփղիսը և կոտորել խաղաղ բնակչությունը։ Նրա վայրագ զորքի հարվածների տակ խորտակվել էր ծաղ-

27 Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Վրաց աղբյուրները..., հատ. Բ, էջ 44։
28 Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն, նույն տեղում, էջ 140—141։
29 Կ ի ր ա կ ո ս Գ ա ն ձ ա կ ե ց ի, էջ 277։

կուն Վրաստանը։ Գառնո կովից և Թիֆլիսի անկումից հետո Ջալալ-էդ-դինը առանց դիմադրության անպատիժ ասպատակել էր ամբողջ Վրաստանը, հասել Աբխազիա, ապա վերադառնալով՝ գրավել Կարսը, Կաղզվանը ամենուրեք սրի մատնելով խաղաղ բնակչությունը։ Ամբողջ երեք տարի Թամթայի հայրն ու եղբայրը հալածական թաքնվել էին անհայտ ու անառիկ ամրոցներում։ Բայց Թամթան կարողացավ ամբողջ երեք տարի Խլաթի պարիսպների վրա համառ դիմադրություն ցույց տալ Ջալալ-էդ-դինին։ Պարտությունից հետո նա կարող էր գերվել Ջալալ-էդ-դինի կողմից, վերջինս կարող էր բռնությամբ տիրանալ նրան, բայց Թամթան չէր կարող կամովին դառնալ իր հոր և եղբոր ոխերիմ թշնամու, ծաղկող Վրաստանը և Զաքարյանների ուժեղացող տունը խորտակող Խորեզմի սուլթանի կինը։ Գերության մեջ Թամթան հանգիստ նստել չէր կարող. նա պետք է օգնության կանչեր ինչպես իր պաշտոնական ամուսնուն՝ Աշրաֆին, որն արդեն նստում էր Դամասկոսում, այնպես էլ իր եղբորը՝ Ավագին։ Ջալալ-էդ-դինը նեղում ու կոտորում էր, ինչպես Իբն-ալ-Ասիրի, այնպես էլ Գանձակեցու վկայությամբ, «ոչ միայն զքրիստոնեայսն, այլ և զպարսիկս»[30]։ Մերձավոր Արևելքի բոլոր պետությունները ոտքի ելան միասնական ջանքերով պարտության մատնելու Խորեզմի սուլթանին։ «Այպա,—գրում է Գանձակեցին,—միաբանեալք Սուլտան Աշրաֆն և Քէմլ եղբայր իւր, որ իշխէր ի կողմանս Եգիպտոսի, և Ալադին, կոչեցին և իւրեանց օգնական ի զօրացն Հայոց, որ յաշխարհին Կիլիկեցւոց, և ի Փռանգացն ծովեզերեայց, և եկին տալ պատերազմ ընդ խորազմեցւոյն Ջալալադինի»[31]։ Միացյալ ուժերի կռիվը Ջալալ-էդ-դինի դեմ տեղի է ունենում 1230 թ., Սասունից հարավ, ներկայիս Դիարբեքիր (Ամիդ) քաղաքի մոտ։ Այդ ժամանակ վրաց արքունիքը խնամիական կապերով կապված էր ոչ միայն Խլաթի թագավորության, այլև Ռկոնիայի սուլթանության և Փոքր Ասիայի այլ մահմեդական էմիրությունների հետ։ Խաչակրաց երրորդ արշավանքի (1189—1192) ձախողումից հետո modus vivendi էր գոյանում ինչպես տիրող մահմեդական դինաստիաների և բնակչության ճնշող մեծամասնություն կազմող քրիստոնյաների, այնպես էլ քրիստոնեական մնացած առանձին իշխանությունների միջև։ Այդ նոր փոխհարաբերության տեսանկյունից Ջալալ-էդ-դինի ասպատակությունները դատապարտելի էին ինչպես քրիստոնեական իշխանությունների, այնպես էլ Փոքր Ասիայի մահմեդական դինաստիաների կողմից, որոնք սկսում էին գնահատել հպատակ քրիստոնյա բնակչության տնտեսական դերը։ Միացյալ ուժերով Ջալալ-էդ-դինի դեմ տարած հաղթանակը գոյացող modus vivendi կարգի հաղթանակն էր, որը մոնղոլական արշավանքներից հետո խափանվեց միայն օսմանյան պետության բարձրացման հետ զուգընթաց՝ նրա վարած դաժան խտրականության քաղաքականության հետևանքով։

Հայ պատմագիրը, արձանագրելով հանդերձ, որ Խլաթի փրկության համար մղվող ճակատամարտում վճռական դերը կատարում են քրիստոնյա զորքերը, որ մահմեդական սուլթանները հաղթանակից հետո «դադարեցին ի պնդելոյ զհետ նոցա», որ «հաւատակիցք նոցա իցին», հաղորդում է նաև այն, որ քաղաքական իշխանության գլուխ կանգնած սուլթանները փորձում էին հակադրվել մահմեդական խուժանի մոլեռանդ խտրականությանը։

30 Նույն տեղում, էջ 244։
31 Նույն տեղում, էջ 215։

«Այս,—շարունակում է Կ. Գանձակեցին,—դարձան մեծաւ ուրախութեամբ յաշխարհն իւրեանց, և ընդ որ անցանէին ընդ քաղաքս և ընդ գաւառս ելանէին ընդ առաջ նոցա պարուք և ծնծղայիւք, զովասացութեամբ ընդունէին։ Իսկ Ալադինն իբրև եկն ի Կեսարիա Կապադովկացւոց, ամենայն բազմութիւն քաղաքին՝ հանդերձ քրիստոնէիւք և քահանայիւք իւրեանց, խաչիւ և ժամահարօք, իբրև յաւուր միոյ ճանապարհ ելին ընդ առաջ նոցա. իբրև մօտ եղև Սուլտանն, բազմութիւն Տաճկաց ոչ տային թոյլ քրիստոնէիցն խառն ինքեանց հպիլ յերկրպագութիւն Սուլտանին, այլ յետս կոյս մղեցին զնոսա։ Եւ նոքա ելին ի բլուր մի հանդէպ բանակին—իբրև եհարց Սուլտանն՝ թե ո՞յք են նոքա, և գիտաց՝ թէ քրիստոնեայք են, ինքն իսկ մեկնեցաւ ի զօրէն միայն, և գնաց ի մէջ նոցա. և հրամայեաց հարկանել ժամահարսն, և պաշտել բարձրաձայն. և այնպէս եմուտ ի քաղաքն, և ետ նոցա պարգևս, և առաքեաց յիւրաքանչիւր տեղիս»[32]։

Զաքարյաններն այդ ժամանակ հալածական թաքնվել էին անառիկ ամրոցներում։ Նրանք զորք չունեին Ջալալ-էդ-դինի դեմ մղվող մեծ ճակատամարտին մասնակցելու համար։ Սակայն Ավագը կարողանում է,—մինչ Ջալալ-էդ-դինն զբաղված էր Ամիդի ճակատամարտով,—գալ Խլաթ և ազատելով Վրաստան տանել իր քրոջը՝ Թամթային։ Ամիդի մոտ չարաչար պարտություն կրելուց հետո Ջալալ-էդ-դինը ապավինում է Մուղան՝ այնտեղ նոր զորք հավաքելու համար, սակայն հանդիպելով թաթարների մի զորամասի, որը հատկապես ուղարկված էր նրան բռնելու համար, ետ է դառնում և Ռասենի վրայով հետապնդվելով նորից հասնում Ամիդ քաղաքի շրջանը, որտեղ թաթարները վրա հասնելով վերջնական պարտության են մատնում նրան։ Վերջին կողմնակիցները լքում են նրան և մենակ մնացած Ջալալ-էդ-դինը սպանվում է Սասնո լեռներում։ Քանի որ վերջին պահին նրա հետ ոչ ոք չի եղել, ժամանակի պատմագիրները տարբեր ձևերով են նկարագրում նրա վախճանը։ Կիրակոս Գանձակեցին գրում է.

«Իսկ Ջալալատին Սուլտանն դարձաւ մեծաւ ամօթով յաշխարհն Աղուանից ի բերրի և յարգաւանդ դաշտն, որ կոչի Մուղան, և անդ գետեղեալ կամէր զօր ժողովել, ապա Թաթարն՝ որ եհան զնա յերկրէն իւրմէ փախստական, զհետ մտեալ նորա՝ տարեալ վարեաց զնա մինչև յԱմիթ. և անդ եհար զօրս նորա սաստկապէս. կորեաւ և անօրէն իշխանն, թէ ի նմին պատերազմի, և թէ որպէս ոմանք ասեն՝ երթայր հետիոտն փախստական, դիմեալ նմա առն միոջ, և գիտացեալ՝ թէ նա է, սպան զնա փոխանակ արեան մերձաւորի իւրոյ, զոր սպանեալ էր նա յայլում աւուր»[33]։

Ջալալ-էդ-դինի մահը տեղի ունեցավ 1231 թ.։ Նույն այդ թվականին Ամիդի շրջանից ետ դարձավ մոնղոլների հետապնդող ջոկատը, և մինչ մոնղոլներն ավելի մեծ ուժով նորից կարշավեին Հայաստանի ու Փոքր Ասիայի վրա, Իկոնիայի Քոյ Կոբաթ սուլթանը 13 տարի (1231—1244) տիրում է Խլաթին։

Թամթայից հետո Խլաթում թագավորել են մոնղոլների հետ գործակցություն հաստատած մահմեդական իշխանավորները, որոնք իրենց նույնպես մեծարել են շահ-ի-արմեն տիտղոսով։ Այս մահմեդական շահերի դամբարաններից[34] իմանում ենք, որ Խլաթի շահ-ի-արմեն Հասան աղա իրն Մահմուդը մե-

32 Նույն տեղում, էջ 216։

33 Նույն տեղում, էջ 217։

34 Л и н ч, Армения, том II, էջ 368 և 375։

ուլ է 1273 թ., Նուգադայ աղան՝ 1279 թ., իսկ սրա որդին՝ Թիմուր աղա իրն Նուգադայը՝ 1281 թ.։ Հայաստանը և Փոքր Ասիան (Ներառյալ Ռուբինյանների Կիլիկիան և սելջուկների Իկոնիան) ենթարկվում էին մոնղոլական իլխանների պարսկական ձյուղին, որի կենտրոնը Թավրիզն էր. իլխանների մի փոխանորդ նստում էր Էրզրումում. հավանաբար նրանք ենթարկվում էր Էրզրումի փոխանորդին։

Հայկական առանձին հողերի մահմեդական իշխանավորների համար ժամանակի հայ պատմագիրների գործածած «քրիստոնէասէր», «աշխարհաշէն» և այլ էպիտետները հոետորական շռայլություն չեն և ոչ էլ շողոքորթություն։ Շահ-Աբբասից դեռ շատ առաջ մահմեդական առանձին իշխանավորներ տեսնում ու գնահատում էին այն մեծ օգուտը, որ տալիս էին երկրագործ, արհեստավոր և առևտրական բնիկները։ Հայտնի է, որ արյունարբու Լենկ-Թեմուրն անգամ Շահ-Աբբասից երկու հարյուր տարի առաջ, օգտագործում էր հայ առևտրականների հմտությունը։ Բանն այն է, որ նախքան արևմուտքում օսմանյան թուրքերը կբռնեին Բյուզանդիոնի տեղը և նորանոր նվաճումներ կանեին ինչպես արևմուտքում, այնպես էլ արևելքում, իսկ Սեֆևիները կբռնեին Սասանյանների տեղը և Հայաստանի տերիտորիայում կբախվեին օսմանցիների հետ, այսինքն Հայաստանի համար կվերականգնվեր հունա-հռոմեական արևմուտքի և պարսկական արևելքի դարավոր բախման ասպարեզը հանդիսանալու տխուր վիճակը, բուֆերային Հայաստանում և հարակից երկրամասերում թափառող վաչկատունների իշխանավորները արյունհեղությամբ և ավերածությամբ քաղաքական իշխանության հասնելուց հետո փորձում էին հենվել ճնշող մեծամասնություն կազմող բնիկ հայ ժողովրդի վրա և իրենց հոչակել շահ-ի-արմեններ։ Այդպես վարվեցին Տարոն-Տուրուբերանին տիրած սելջուկ Սուկմանն ու նրա սելջուկ հաջորդները (1100—1207), քրդական ծագում ունեցող էյուբյանները (1207—1250), էյուբյաններին հաջորդած մահմեդական իշխանավորները. այդպես վարվեցին նաև Լենկ-Թեմուրի արշավանքներից առաջ ու հետո հայկական լեռնաշխարհում գլուխ բարձրացրած Կարա-Կոյունլու (1406—1469) և Աք-Կոյունլու (1378—1502) թուրքմենները, որոնցից Կարա-Կոյունլու Իսքենդերը (1420—1437) ոչ միայն իրեն հոչակեց շահ-ի-արմեն, այլև հող նախապատրաստեց հայ բնօրրանի կենտրոնում՝ Էջմիածնում ամենայն հայոց կաթողիկոսության վերականգնելու համար։ Նոր էր վերջացել Լենկ-Թեմուրի ավերիչ արշավանքը Հայաստանի վրայով դեպի Փոքր Ասիա, բայց Շահրուհը (  1447) Հայաստանի տերիտորիայի վրա շարունակ պատերազմներ էր մղում կարա-կոյունլուների դեմ։ Վիճարանության իրենց հմուտ եղանակի համար աղթարմա-կախարդ հորջորջման արժանացած ունիթոռները մեծ ուժ էին ներկայացնում մանավանդ Նախիջևանի շրջանում և սպառնում էին անդեկ մնացած հայ եկեղեցուն, որի անզոր, դիմադրելի դարձած պետերը նստում էին հեռավոր Սսում։ Շահ-ի-արմենի համար հարկավոր էր, որ իր հպատակների եկեղեցին ուրույն և հզոր կենտրոն ունենար իր երկրի սահմաններում։ Եվ հարազատ որդու կողմից դավադրաբար սպանված Իսքենդեր շահ-ի-արմենի եղբոր՝ Ջհան-շահի (1437—1467) օրոք իրագործվեց լուսավորչական եկեղեցու մայր աթոռի վերահաստատումը Էջմիածնում՝ Երևանի տիրակալ Յագուբ բեգի ջանքերով։ Բնորոշ է, որ Թովմա Մեծոփեցին, որ Էջմիածնի աթոռի վերականգնման ամենաեռանդուն գործիչն է եղել և թողել է մեզ այդ իրադարձությանը նվիրված իր «Յիշատակարանը», ցանկանալով հանդերձ

*զանազան տեսիլների նկարագրությամբ վարքագրական բնույթ տալ իր «Յիշատակարանին», այնուամենայնիվ, ասում է, որ 1441 թ. կաթողիկոսարնտիր ժողովը, որ պիտի իրագործեր հայ բնօրրանի լուսավորչական հոգևորականության նվիրական իղձը, գումարվել է Արարատյան տիրակալ Յաղուբ բեգի հրավեր-նամակով («աւետեաց՝ գալ վաղվաղակի առանց ահի և երկիւղի կատարել զխնդիրս ձեր»[35]) և որ վերոհիշյալ Յաղուբ բեգը ոչ միայն նամակով հրավիրել է լուսավորչական հայտնի հոգևորականներին, այլև «իբրև զթագաւոր քրիստոնէից սիրով ժողովեալ զզօրս իւր և զմեզ զամենեսեան, փողով և թմբկով զոչմամբ բարձրաղունիւ մտօք ի սուրբ քաղաքն Վաղարշապատ»[36]։ Իսկ երբ պարզվում է, որ Սսո կաթողիկոս Մուսաբեգյանը չի ուզում էջմիածին գալ և երկարատև ու բազմանդամ ժողովում տարաձայնություններ են ծագում և ցրվելու տրամադրություն է առաջ գալիս, «Հրաման եղև ի բռնաւորէն օրհնել կաթողիկոս առանց հակառակութեան»[37]։*

*Հիմնականում աշխարհագրական անբարենպաստ դիրքի բերումով Շահ-ի-արմեններին չհաջողվեց քաղաքական կայուն իշխանություն ստեղծել Հայկական բարձրավանդակում, որի բուֆերային դիրքը դնալով ավելի էր շեշտվում հզորացող Թուրքիայի և Պարսկաստանի սրանքում։ Սակայն կաթողիկոսության վերականգնումը հայկական բնօրրանում քաղաքական հույժ կարևոր իրադարձություն էր ոչ միայն այդ հեղհեղուկ դարաշրջանում, այլև հայ ժողովրդի հետագա ամբողջ պատմության համար։ Այն հանգամանքը, որ մի տասնամյակից էլ պակաս ժամանակամիջոցում, ընդամենը 3—4 տարում, էջմիածինը կարողացավ հնչուն դրամով գնել տասնյակ գյուղեր և դառնալ ֆեոդալական ազդեցիկ ու հզոր կազմակերպություն, որի հովիվները անմիջական հարաբերության մեջ էին մտնում շահերի ու սուլթանների հետ և իրենց ուժերի ներածի չափով պաշտպան կանգնում անպաշտպան հոտին, վկայում է հայ ժողովրդի պոտենցիալ անմար ուժն իր բնօրրանում։*

## ШАХ-и-АРМЕНЫ

А. Г. ТУРШЯН

(Резюме)

После нашествия сельджуков (XI в.) и до образования и усиления Османской империи на западе (XV в.), и возвышения Сефевидов на востоке (1502) в буферной Армении властвовали отдельные номадские племена, однако в стране, и численностью и культурой, преобладали армяне. Поэтому военачальники этих номадских сил именовали себя Шах-и-Арменами («королями Армян») и старались защищать самостоятельность своих владений против Иконийского султаната и Османской империи на западе и Сефевидов на востоке.

Первым Шах-и-Арменом был сельджукский военачальник Сукман (1100), который выбрал столицей своего царства Ахлат (Хлат) на северо-

35 «Թովմա Մեծոփեցու Յիշատակարանը», Թիֆլիս, 1892, էջ 65։
36 Նույն տեղում, էջ 69։
37 Նույն տեղում։

западном берегу Ванского озера, в армянской провинции Тарон-Турубе-ран, издревле называвшейся «Домом армян».

В 1207—1228 гг. трон в Ахлате перешел в руки Эйюбидов, но страной фактически правила жена первого Эйюбида, христианка Тамита—дочь Захарида Иване (1209—1250). После Тамиты страной правили назначенные монголами военачальники.

Нашествие Тимура внесло большие изменения в политическую жизнь Ближнего Востока. Временами здесь возвышаются туркменские племена Кара-Койунлу (1378—1469) и Ак-Койунлу (1378—1502), правители которых, когда им удавалось завладеть Ахлатом, любили именовать себя Шах-и-Арменами.

Из-за буферного, неблагоприятного положения на стыке усиливающихся Османской империи и шахской Персии Шах-и-Арменам не удалось создать стабильную власть и государственность, но в последующей истории армянского народа важное значение имело перенесение центра армянской церкви с Сиса (Киликия) в Эчмиадзин, что произошло в 1441 г., в период царствования брата Шах-и-Армена Искендера (1437—1467).